Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


Էջ

Նյութեր զրույցների համար

Ա. ԴԱՎԹՅԱՆ.— *Անասուններին՝ տաք և կուշտ ձմեռում* . . . . . . 1

Ագիտացիոն աշխատանքի փորձից

Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆ— *Ցուցադրական ագիտացիան ֆաբրիկայում* . . . . . . 8

Վ. ԲԱԲԱՅԱՆ— *Ինչ տվեց Հոկտեմբերյան ռեվոլյուցիան Զանգեզուրի հանքագործներին* . 16

Մեթոդական օգնություն ագիտատորներին

Ա. ՏՈՒՄԱՋՈՎ — *Ագիտատորի խոսքի կուլտուրայի մասին* . . . . . 24

Օգնություն ագիտատորներին

*Թեմաներ և գրականություն ագիտատորների զրույցների համար* . . . . . 39

*Տեղեկատու բաժին* . . . . . . 43


---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*






# ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻՆ՝ ՏԱՔ ԵՎ ԿՈՒՇՏ ՁՄԵՌՈՒՄ


*Ա. ԴԱՎԹՅԱՆ*

Գյուղատնտեսության մինիստրության գլխավոր ագրոնոմ


*Բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու վերաբերյալ պարտիայի կոչը կյանքում իրականացնելու և ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների կողմից վերցրած պարտավորություններին համապատասխան, անասնապահական մթերքների ստացումը ու անասունների գլխաքանակի աճը ապահովելու նպատակով, անհրաժեշտ է, որ կոլտնտեսություններում այժմվանից լրջորեն զբաղվեն անասունների ձմեռման նախապատրաստման և հաջող անցկացման գործով։*

*Կոլտնտեսությունների վարչությունները պետք է վերանայեն կոլտնտեսություններում կերի կուտակման վիճակը, պարզեն նրա ապահովվածության աստիճանը և պար-*





տիական սկզբնական կազմակերպությունների օգնությամբ մոբիլիզացիայի ենթարկեն կոլտնտեսային ամբողջ ակտիվին, արտադրությունում եղած հնարավորությունները մաքսիմալ չափով օգտագործելու ու հանրային անասնագլխաքանակը լրիվ չափով ապահովելու պահանջվող քանակի կերերով։

Առաջիկա մի քանի օրում անհրաժեշտ է ավարտել խոտհարքներում կուտակված և դիզած խոտի, ինչպես նաև հացահատիկային կուլտուրաների բերքահավաքից հետո դաշտում եղած ծղոտի ու կերի արմատապտուղների հավաքման և փոխադրման աշխատանքները անասնաշենքերի մոտ։

Միաժամանակ պետք է խիստ հսկողություն սահմանել, կուտակված ամբողջ կերի ճիշտ հաշվառման և հաշվապահությունում մուտքագրման աշխատանքների ժամանակին կատարման վրա։ Անհրաժեշտ է, որ բոլոր կոլտնտեսություններում ընթացիկ տարվա բերքից առանձնացվեն հատիկա-ֆուրաժային կերի համապատասխան ֆոնդերը, որոնք կօգտագործվեն բացառապես ձմռանը անասուններին կերակրելու նպատակների համար։

Պետք է տնտեսությունում հատուկ հսկողություն սահմանել կերերի ծախսման վրա։



Կոլտնտեսություններում անասնակերերի ծախսումը պլանավորված կատարելու և մսուրային շրջանում անասնապահական մթերքների ստացումը ապահովելու նպատակով, կոլտնտեսությունների մասնագետները՝ զոոտեխնիկը, ագրոնոմը անասնապահական ֆերմաների վարիչների հետ համատեղ, առաջիկա օրերին պետք է ավարտեն անասնակերերի բալանսի, ինչպես նաև կերերի ծախսման ամսեկան պլանների կազմումը՝ ըստ առանձին ֆերմաների և անասունների խմբերի։

Անասնակերերի բալանսը ըստ ֆերմաների կազմելիս, պետք է հաշվի առնել անասնատեսակները, նրանց կենդանի քաշը, մսուրային շրջանի օրերի տևողությունը և անասունների մթերատվությունը և դրանց համապատասխան էլ կազմել անասունների օրվա կերաբաժինները։

Անասնակերի բալանսը և ծախսումների ամսեկան պլանները, պետք է քննության առնվեն ֆերմաների աշխատողների խորհրդակցություններում, հաշվի առնվեն արված դիտողությունները, և ապա, հաստատվեն կոլտնտեսությունների վարչություններում։

Մեքենա-տրակտորային կայանները նույնպես մեծ անելիքներ ունեն կոլտնտե-

ություններում անասունների ձմեռումը լավագույն ձևով նախապատրաստելու և անցկացնելու գործում։ Նրանց մասնագիտական անձնակազմը պետք է ամենօրյա օգնություն կազմակերպի կոլտնտեսություններին, վերանորոգի և կարգի բերի ֆերմաներում կերերը և գոմաղբը փոխադրող մեքենայացված ճանապարհները, անասուններին ջրելու ավտոմատ խմոցները, ինչպես նաև կերերը վերամշակող՝ մանրացնող, լվացող, խաշող մեքենաներն ու ինվենտարը։

Կերերի օգտագործումը ռացիոնալ կազմակերպելու և նրանց էֆեկտիվությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է, որ կերերը անասուններին տրվի նախապատրաստված և վերամշակված վիճակում՝ հացահատիկների ծղոտը՝ մանրացված և աղաջրով, գոլորշիով, կամ ինքնատաքացմամբ փափկացրած, արմատապտուղները՝ լվացված և մանրացրած, կարտոֆիլը՝ եփած վիճակում։

Անասունների ձմեռումը լավագույն ձևով կազմակերպելու կարևոր հարցերից մեկը՝ բարեկարգ անասնաշենքեր ունենալու հարցն է։

Կոլտնտեսությունների վարչությունները, պարտիական սկզբնական կազմակերպու-



թյունները և ֆերմաների վարիչները. այդ հարցով պետք է լրջորեն մտահոգվեն դեռ նախքան անասունների մսուրային շրջանի սկսվելը, ավարտեն նորակառույց անասնաշենքերի շինարարության աշխատանքները, ինչպես նաև ապահովեն եղած շենքերի վերանորոգումը, սպիտակեցումը, ախտահանումը, նրանց կահավորումը և տաքացումը։

Հայտնի է, որ չոր, լուսավոր և տաք անասնաշենքերում անասունների ձմեռումը, նպաստում է անասնապահական մթերքների արտադրության ավելացմանը և անասնակերերի խնայողաբար ծախսմանը։

Բազմաթիվ շրջանների կոլտնտեսությունների պրակտիկան ապացուցել է, որ անասնաբուծական մթերքների արտադրանքի՝ կաթի, մսի, բրդի շուրջ 40—50 տոկոսը, իսկ խոզերից ստացվող մսի և թռչուններից՝ ձվի ու մսի արտադրանքի 85—90 տոկոսը ստացվել է մսուրային պահվածքի կերակրման պայմաններում։

Մսուրային շրջանում անասնապահական մթերքների արտադրանքը ավելացնելու և կոլտնտեսությունների կողմից վերցրած 1958 թվականի պարտավորությունները անթերի կատարելու նպատակով անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր կոլտնտեսությունում

ըստ առանձին ֆերմաների սահմանից անասնապահական մթերքների՝ կաթի, մսի և մյուս տեսակների ստացման ամսեկան և տասնօրյա առաջադրանքներ։

Անասունների մսուրային խնամքը և նրանց կերակրումը կազմակերպված անցկացնելու նպատակով, մինչև մսուրային սեզոնի սկսելը, յուրաքանչյուր կոլտնտեսությունում պետք է վերանայել անասնապահական ֆերմայում աշխատող կադրերը, կոմպլեկտավորելով դրանք անհրաժեշտ թվով հմուտ և բարեխիղճ անասնապահներով, հովիվներով, խոզապահներով, ձիապահներով և կթվորներով։

Լուրջ ուշադրություն պետք է նվիրել անասունների մսուրային պահվածքի ժամանակաշրջանում ֆերմաներում աշխատանքի կազմակերպման հարցերին։ Այդ ժամանակաշրջանում յուրաքանչյուր անասնապահ կոլտնտեսականի պետք է ամրացնել արտադրական նորմաներին համապատասխան թվով առանձին խումբ անասուններ և նրան պատասխանատու դարձնել այդ անասունների խնամքի համար։

Անասնապահական ֆերմաներում աշխատող կոլտնտեսականների անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատա-



կով, անհրաժեշտ է ժամանակին կիրառել լրացուցիչ վարձատրման և ավանսային կարգով տրվող խրախուսանքի միջոցները, որոնք անշուշտ կնպաստեն անասունների մթերատվության բարձրացմանը, գլխաքանակի ավելացմանը և անասունների խնամքը լավագույն ձևով կազմակերպելուն։

Պարտիական սկզբնական կազմակերպությունները, ֆերմաներում աշխատող ագիտատորները, լայն չափով պետք է մասսայականացնեն լավագույն անասնապահների առաջավոր փորձը ֆերմաներում աշխատող կոլտնտեսականների մեջ, լայնորեն ծավալեն սոցիալիստական մրցությունը՝ առաջիկա մսուրային շրջանում անասնապահությունից մեծ քանակի անասնապահական մթերքներ ստանալու համար։

Այդ նպատակի համար պետք է լայն չափով օգտագործել ֆերմաներում եղած կարմիր անկյունները, դրանք կահավորելով անհրաժեշտ գույքով, գրականությամբ և պլակատներով, պետք է կանոնավոր կերպով լույս ընծայել պատի թերթեր և բյուլետեններ։

# ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ՖԱԲՐԻԿԱՅՈՒՄ

*Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Լենինականի տեքստիլ կոմբինատի ներկման-վերամշակման ֆաբրիկայի պարտբյուրոյի քարտուղար

Մեր ֆաբրիկայի պարտիական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները լուրջ ուշադրություն են դարձնում ցուցադրական ագիտացիայի կազմակերպմանը և այդ գործում ձեռք ենք բերել որոշակի հաջողություններ։

Լոզունգների, դիագրամաների, պլակատների, ցուցափեղկերի և ցուցադրական ագիտացիայի այլ միջոցներով մենք ֆաբրիկայի բանվորներին, ծառայողներին և ինժեներատեխնիկական աշխատողներին հասցնում ենք պարտիայի XX համագումարի կողմից առաջադրված խնդիրները, 40 տարվա ընթացքում ՍՍՌՄ ժողովուրդների ձեռք բե-



րած նվաճումները և արտացոլում մեր ֆաբրիկայի ներքին կյանքը։

Ֆաբրիկայի ցեխերի ու արտադրական տեղամասերի միջանցքներում փակցրել ենք ՍՄԿԿ XX համագումարի որոշումները, 6-րդ հնգամյակի խնդիրները և Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի նվաճումները պատկերող լոզունգներ, պլակատներ։ Ֆաբրիկայի մուտքի մոտ պատրաստված են հատուկ անկյուններ, ուր փակցված են մեր արտադրության առաջավորների, ռացիոնալիզատորների և նորարարների նկարները, 40-ամյակի պատվին ստանձնած մեր պարտավորությունները ու այլ ցուցադրական նյութեր։ Ստեղծել ենք «Սովետական պրոֆմիությունների 50-ամյակը» և «Ի՞նչ տվեց Մեծ Հոկտեմբերը սովետական երիտասարդությանը» խորագրերով հատուկ ցուցափեղկեր, որոնցում նկարագրված է այն ուղին, որ անցել են լենինյան կոմերիտմիությունը և սովետական պրոֆմիությունները սովետական իշխանության 40 տարիների ընթացքում։

Միայն վերջերս ֆաբրիկայի պարտիական բյուրոյի նախաձեռնությամբ ֆաբրիկայի 10 ցեխերում և աշխատամասերում ստեղծվեցին լենինյան անկյուններ և Հոկտեմբերյան Սո-

ցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի 40-ամյակին նվիրված ցուցափեղկեր։

Ֆաբրիկա տանող ծառուղիներում ու աշխատամասերում փակցրել ենք բազմաթիվ լոզունգներ, որոնք բանվորներին կոչ են անում պայքարելու խնայողության, հումքի, էլեկտրաէներգիայի, օժանդակ նյութերի տնտեսման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և թողարկվող արտադրանքի որակի բարելավման համար։

Այդ լոզունգները և պլակատները միաժամանակ բանվորներին տեղյակ են պահում արտադրության պրոցեսում օգտագործվող քիմիական նյութերի, ներկերի, ջրի, գոլորշու, էլեկտրաէներգիայի յուրաքանչյուր միավորի արժեքի, դրանց կորուստների պատճառների և տնտեսման ուղիների մասին։

Ցուցադրական ագիտացիան կազմակերպելիս մենք լուրջ ուշադրություն ենք դարձնում ոչ միայն նրա արտաքին ձևավորմանը, այլ հատկապես նրա բովանդակության հարստությանը, թեմաների բազմազանությանը և օգտագործվող նյութերի ակտուալությանը։

Երկար ժամանակ մեր ֆաբրիկան թողարկում էր անորակ արտադրանք, մեծ չափերի



էր հասնում մետրային և քաշային լոսկուտը։

Պարտբյուրոն քաղաքական-դաստիարակչական աշխատանքների հետ միասին լուրջ ուշադրություն դարձրեց նաև ցուցադրական ագիտացիայի կազմակերպման վրա։ Ցեխերում և բաժիններում փակցվեցին նոր լոզունգներ, պլակատներ և ցուցադրական ագիտացիայի այլ նյութեր։ Անցկացվեցին որակի բարձրացմանը և լոսկուտի կրճատմանը նվիրված կոնկուրսներ։ Սպիտակեցնող ցեխում փակցված լոզունգներից մեկում ասվում է՝ «Բանվորնե՛ր և ծառայողնե՛ր, պայքարեցեք ձեր ցեխում առաջացող անորակ արտադրանքի պատճառների, կտորի կեղտոտության, յուղոտության, ժանգոտվածության, այրվածքների և թուլության դեմ»։ Իսկ խոտանող ցեխում փակցված լոզունգներից մեկում նշվում է. «Ընկեր խոտանողնե՛ր, ձեր անուշադիր աշխատանքից առաջանում է լոսկուտ, իսկ դա կտորի արժեքը գցում է 5—6 անգամ, ուրեմն աշխատենք ուշադիր և լավ», կամ՝ «Հիշի՛ր. քաշային լոսկուտի մեկ կիլոգրամն արժե 4—32 ռուբլի, իսկ մեկ կիլոգրամ լոսկուտը 9—12 մետր կտոր է, որի յուրաքանչյուր մետրը արժի 8—15

ռուբլի, ուրեմն պայքարենք լոսկուտի կրճատման համար»։

Արտադրանքի որակի բարձրացման և լոսկուտի կրճատման նպատակով բոլոր ցեխերում ստեղծեցինք խոտանի անկյուններ, ուր փակցվում են խոտան արտադրանքի նմուշները, նրա առաջացման պատճառները և խոտան արտադրողների անուն, ազգանունները։

Այս միջոցառումները տվեցին իրենց դրական արդյունքը։ Կարճ ժամանակում 0,5—2 տոկոսով բարձրացավ առաջին տեսակի արտադրանքի թողարկումը, կրճատվեց լոսկուտը։ Եթե 1956 թվականի հունիս—օգոստոս ամիսներին ֆաբրիկան թողարկել էր 567 հազար մետր մետրային և քաշային լոսկուտ կամ 2—3,5 անգամ ավելի քան նախատեսված է պլանով, ապա այս տարի նույն ժամանակամիջոցում այն կազմում է ընդամենը 300 հազար մետր և քաշային լոսկուտը իջեցվեց 0,7 տոկոսի, պլանով նախատեսված 0,9 տոկոսի փոխարեն։

Հումքի, ներկերի, քիմիական նյութերի, ջրի, գոլորշու, էլեկտրաէներգիայի տնտեսմանն ու արտադրանքի ինքնարժեքի իջեցմանն է նվիրված վերջերս պատրաստված բազմաթիվ լոզունգները, դիագրամաներն ու



ցուցափեղկերը, նրանցում նշված է. «Խնամքով վերաբերվի՛ր ներկերի հետ, հիշի՛ր, որ նրա մեկ տոկոսի տնտեսումից ֆաբրիկան կստանա 7.506 ռուբլու օգուտ» կամ «Հիշի՛ր, որ 100 խոր. մետր ջրի տնտեսումից ֆաբրիկան կստանա 81 ռուբլու օգուտ, ուրեմն խնամքով վերաբերվիր ջրի հետ», «Խնայի՛ր գոլորշին, հիշի՛ր, որ նրա 1 տոկոսի տնտեսումից ֆաբրիկան կստանա 34.484 ռուբլի օգուտ» և այլն։

Ցուցադրական ագիտացիայի նյութերի, ցեխային պատի թերթերի և «Վերամշակող» ամենօրյա պատի թերթի միջոցով մենք ոչ միայն պրոպագանդում ենք դրականը, լավը, այլ նաև հասարակական լայն կարծիք ենք ստեղծում ծույլերի, լոդրերի, աշխատանքային և արտադրական կարգապահությունը խախտողների, հակահասարակական արարքներ կատարողների նկատմամբ։

Ֆաբրիկայում մոտ օրերս կազմակերպվել է քաղաքական և տնտեսական լուսավորության կաբինետ, ուր ցուցադրվում են ֆաբրիկայի արտադրանքի աճը, ինքնարժեքի իջեցման և որակի բարձրացման ուղղությամբ տարվող աշխատանքները, թողարկվող արտադրանքի նմուշները, օգտագործվող ներկերի և քիմիական նյութերի տեսակները, ա-

գիտատորների կողմից անցկացվող զրույցներին օգնող նյութեր և այլն։

Ցուցափեղկերում պատկերվում է նաև, թե ինչ է արտադրվում մեկ րոպեի ընթացքում մեր Հայրենիքում։

Ֆաբրիկայում ստեղծել ենք «Թվեր և փաստեր», «Պայքար տեխնիկական պրոգրեսի համար», «Մեր ֆաբրիկայի առօրյան և հեռանկարները» անկյուններ, որ պատկերված է Սովետական Հայաստանի, Լենինական քաղաքի և մեր կոմբինատի նվաճումները, ֆաբրիկայի ռացիոնալիզատորների աշխատանքը։

Ցուցադրական ագիտացիայի նյութերի, թվերի և փաստերի ընտրության, ցուցափեղկերի և դիագրամաների ստեղծման գործում ակտիվ մասնակցություն են ցուցաբերում ֆաբրիկայի վարիչ ընկ. Սպորկինը, վարիչի տեղակալ ընկ. Մ. Սահակյանը, ինժեներ-ռացիոնալիզատորներ՝ Ն. Ստեփանյանը, Մ. Նահապետյանը, առաջավոր բանվորներ՝ Ս. Թադևոսյանը, Վ. Ստեփանյանը, Գ. Գաբրիելյանը և ուրիշները։

Այսպիսով մեր ֆաբրիկայի պարտիական բյուրոն կենսագործելով ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը, ձեռնարկում է կոնկրետ



միջոցառումներ, որպեսզի ցուցադրական ագիտացիայի բազմաթիվ ձևերի՝ պլակատների ու լոզունգների, ցուցափեղկերի ու դիագրամաների, պատի թերթերի և ցեխային կայծակների միջոցով ոգեշնչի ֆաբրիկայի աշխատողներին, նրանց մղի նորանոր սխրանքների, նրանց մեջ արթնացնի լավը, աշխատանքի ձգտումը, զարգացնի նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, բարձրացնի նրանց քաղաքական ակտիվությունը և նրանց ողջ ստեղծագործական եռանդը նպատակամղի Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ստանձնած պարտավորությունների կատարմանը։

Ցուցադրական ագիտացիան համարվում է աշխատավորների դաստիարակության և նրանց ուժերի մոբիլիզացման ամենալավագույն ձևերից մեկը, քաղաքական աշխատանքի անբաժանելի մասը և, հետևապես նրա լավ, խնամքով կազմակերպումը խոշոր նշանակություն ունի արտադրական պլանները կատարելու գործում։

---

# ԻՆՉ ՏՎԵՑ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՀԱՆՔԱԳՈՐԾՆԵՐԻՆ

## Ագիտատոր, ինժեներ Վ. Բաբայանի զրույցը

*Օրերս ագիտատոր Վ. Բաբայանը իր հերթական զրույցն անցկացրեց հետևյալ թեմայով. «Ի՞նչ տվեց Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան Զանգեզուրի հանքագործներին»։ Նա սկսեց այսպես.*

— Սրանից 40 տարի առաջ չափազանց ծանր էին հանքաշխարհի մարդկանց կյանքն ու աշխատանքային պայմանները։ «Օրենքով», աշխատանքային օր էր սահմանված 11—12 ժամ, բայց դա ևս խախտվում էր։ Բանվորները վաղ առավոտյան մոտիկ գյուղերից գալիս էին աշխատանքի (այդ ժամանակ հանքերի շրջանում բնակարաններ չկային)։ Հանքերում աշխատում էին նաև Կավարտ, Բեխ, Բաղաբուրջ, Վաչագան գյուղերի երեխաները։ Կապիտալիզմը նրանց զրկել էր պատանեկությունից, դպրոցից, դատապարտել ուժից վեր աշխատանքի։ Միայն հե-



ռու գյուղերից եկած բանվորներին էին տեղ տալիս կազարմաներում։ Հողե հատակի վրա քնում էին 30—40 մարդ։ Հերթափոխությունից նոր եկածները կրակի վրա չորացնում էին իրենց թաց հագուստները, սպասելով, որ քնածները արթնանան և աշխատանքի գնան՝ տեղ ազատելով իրենց համար։

Լեռնագործները պղնձաքարով լիքը կողովները շալակներին, ձեռքին բռնած նավթի ճրագը, օրը մի քանի անգամ դուրս էին գալիս գետնի ընդերքից, դատարկում բեռը և նորից ետ դառնում։ 11—12 ժամվա ծանր աշխատանքի համար ստանում էին 20—25 կոպեկ։ Այն ժամանակ շալակով ապար կրողին անվանում էին «չանգլչի»։ Մի չանգլչին պարտավոր էր «մաթխաբչու» և «Թոխմախչու» (այժմյան հորատողի) օրվա փորած ապարը հավաքել և շալակով դուրս տանել։ Աշխատանքի ընթացքում բանվորը վնասվում էր, դա մեծ մասամբ լինում էր ջարդվածքներ, խեղումներ։ Հանքատերը մերժում էր վնասվածք ստացած բանվորին նյութական օգնություն ցույց տալ, իր հաշվին նրան բուժման ուղարկել։

Այդ ծանր ժամանակները վաղուց անցել, գնացել են։ Զանգեզուրի ընդերքի անսպառ հարստությունները այժմ դարձել են պետա-

կան, ժողովրդական սեփականություն։ Ներկայումս հանքագործը սիրում է իր պրոֆեսիան, և հպարտանում, որ ինքը լեռնագործ է, գրագետ ու գիտակից մարդ։ Նա հասկանում է, որ ինքն աշխատում է իր համար, իր ընտանիքի համար, իր հարազատ պետության համար։ Սովետական կարգը լեռնագործին դարձրեց որոնող, գյուտարար ու ռացիոնալիզատոր, բարձրացել է նրա ստեղծագործական նախաձեռնությունը, մոտեցրել է նրան գիտությանը։ Ինչքան ճիշտ է ասել Մաքսիմ Գորկին, որ բանվորն աշխատանքի մարդ է. նա շատ ավելի լավ է, շատ ավելի զորեղ և գեղեցիկ, քան ինքն է կարծում իր մասին։

Սովետական տարիներին հիմնովին փոխվել են մեր հանքերը, փոխվել են մարդիկ, փոխվել են նրանց աշխատանքի պայմանները, գործիքները։ Եթե 1887 թվականին մեկ բանվորը տարեկան արտադրում էր 24 փութ պղինձ, 1913 թվականին՝ 18 տոննա, ապա 1956 թվականին, չնայած աշխատանքային օրվա խիստ կրճատմանը՝ 61,5 տոննա պղինձ։

Այժմ ստորերկրյա հանքուղիներն ամբողջությամբ էլեկտրիֆիկացված են։ Առաջ են եկել լեռնային նոր պրոֆեսիաներ, որոնք



մարդու աշխատանքը հեշտացնող, արտադրողականությունը բարձրացնող, մեխանիզմների արմատավորման արդյունք են։

Նախկին «թոխմախչուն» և «մաթխաբչուն» փոխարինում է խորը փորման հաստոցը, որով հորատողը մի հերթափոխում փորում է 50-ից ավելի 150 գծային մետր խորությամբ հորատանցքեր։ Մեկ պայթեցման ընթացքում պոկվում է 10—15 հազար տոննա ապար, այնքան, որքան տարիներ առաջ տալիս էին մի քանի հանքեր միասին։

Այս նոր մեթոդի առավելությունն այն է, որ բանվորական ուժի քիչ ծախսումով, 2,5 անգամ բարձրանում է արտադրողականությունը, մեծ քանակությամբ պայթուցիկ և այլ նյութերի խնայողություն է լինում։

Ինչու հեռու գնանք. մեր հանքից էլեկտրոքարշավար Պողոս Պողոսյանի բրիգադան մեկ ժամում հանում է այնքան հանքաքար, որքան չանգլչին հանում էր մեկ տարվա ընթացքում։ Ստորերկրյա էլեկտրաքարշը մեկ ռեյսում հանքից ֆաբրիկա է հասցնում 24 տոննա հանքաքար։

Պողոսյանի բրիգադան այս տարվա առաջին եռամսյակի իր պլանը կատարել է 145 տոկոսով, երկրորդ եռամսյակինը՝ 135, երրորդ եռամսյակինը՝ 143 տոկոսով և ժամա-

նակից 3 ամիս շուտ փակել 1957 թվականի հաշիվը։ Իր ցուցանիշներով Պողոսյանից ետ չի մնում Վոլոդյա Ալեքսանյանի բրիգադան, որը նույնպես փակել է 1957 թվականի հաշիվը և այժմ աշխատում է 1958 թվականի հաշվին։

— Սակայն ճիշտ չի լինի,— ասում է ագիտատորը,— եթե այս հաջողությունները վերագրենք միայն մեզ՝ ստորերկրյա տրանսպորտնիկներիս, քանի որ ֆաբրիկա տեղափոխած հանքաքարը տալիս են Նոր Բարաբաթում հանքի, գլխավոր հանքուղու և № 1—2 հանքի լեռնագործները։ Նրանք գերակատարելով հանքաքարի պոկման, հանքաքարի հանույթի լեռնանախապատրաստական ու հետախուզական աշխատանքների պլանները, տվել են մեծ քանակությամբ արտապլանային հանքաքար։ Այս հաջողությունների մեջ իրենց բաժինն ունեն նշանավոր հորատողներ Խորեն Բաղդունցը, Հուսեին Վալիևը, Աբուշ Իսմայիլովը և ուրիշներ, որոնք 9 ամսվա ընթացքում կատարել են 12 ամսվա նորմա։

Պլանների կատարման գործին մեծ չափով օգնում է վարձատրման պրոգրեսիվ եղանակը։ Եթե 1913 թվականին մեկ բանվորի օրվա միջին աշխատավարձը կազմում էր 80 կո-



պեկ, ապա 1956 թվականին այն հասավ 34 ռ. 81 կոպեկի, իսկ այժմ ավելի բարձր է։ Դրա մեջ չեն մտնում այն գումարները, որ միանվագ տրվում է հանքագործներին երկարամյա ամբասիր աշխատանքի համար։

Լեռնագործի աշխատանքի պայմանները հեշտացնելը, նրանց կուլտ-կենցաղային կարիքների բարելավումը միշտ էլ եղել է պարտիայի ու Սովետական կառավարության ուշադրության կենտրոնում։ Մեր լեռնագործներն ստանում են լրացուցիչ արձակուրդ, օգտվում են սանատորիաներից ու հանգստյան տներից։ Մենք ներկայումս ունենք մեր սեփական հանգստի տունը և գիշերային երկու սանատորիա։

Ստորերկրյա աշխատանքները բարելավելու համար ամեն տարի խոշոր ներդրումներ են կատարվում։ Սովետական պետությունը մի քանի հարյուր միլիոն ռուբլի է ծախսել հանքերում վերելակներ, օդափոխիչներ, բաղնիքներ, բժշկական պունկտեր կառուցելու վրա։

Ագիտատորը իր զրույցի եզրափակիչ մասը նվիրում է հանքափորների քաղաքին, նրա կուլտ-կենցաղային օջախներին, դպրոցներին ու մանկապարտեզներին, բժշկա-սանի-

տարական հիմնարկներին ու կապի միջոցներին։

— 1921 թվականին Ղափանը աննշան բնակավայր էր,— ասում է Բաբայանը,— որովհետև բանվորների համար կառուցված բնակելի շենքեր չկային։ Բայց վերջին մի քանի տարում միայն հանքվարչության միջոցներով կառուցվել է 18 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Մի այդքան էլ կառուցել են քաղաքային Սովետն ու մյուս հիմնարկ-ձեռնարկությունները։ Մեծ թվով անհատական բնակարաններ են կառուցել նաև բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները։

40 տարի առաջ, Ղափանին սպասարկում էր մի պետական բուժակ։ Այժմ Ղափանն ունի 62 բժիշկ, հանքերին ու ձեռնարկություններին կից ստեղծված են բուժ պունկտեր։ Գործում են քաղաքային երկու հիվանդանոց՝ 100 մահճակալով։ Նոր տարվանից շահագործման կհանձնվի երկու բժշկական տեղամաս, յուրաքանչյուրը՝ 50 մահճակալանոց, ինչպես նաև ծննդատուն։

Ղափանի արդյունաբերական շրջանում 1921 թվականին չկար ոչ մի դպրոց։ Այժմ նա իր բանավաններով ունի 14 դպրոց, որոնցից չորսը միջնակարգ։ Դրանց մեջ չի



մտնում երաժշտական դպրոցը, ուր հանքագործների երեխաները ստանում են նաև երաժշտական կրթություն։

Զանգեզուրի հանքերի շահագործման 60 տարվա ընթացքում Ղափանը կապի բաժանմունք չի ունեցել։ Այժմ մեր քաղաքը ունի կապի 4 բաժանմունք, բանվորներից շատերն իրենց բնակարաններում ունեն հեռախոսներ։ Քաղաքն ու բանվորական ավանները ռադիոֆիկացման են ենթարկվել։

Ներկայումս Ղափանը մեր մայրաքաղաք Երևանի հետ կապված է երկաթուղով, օդային հաղորդակցությամբ և խճուղով։

Դժվար է մեկ-մեկ թվել այն բոլոր նվաճումները, որոնք 40 տարվա ընթացքում, սովետական կարգերի շնորհիվ ձեռք են բերել Ղափանի հանքագործները։

— Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը,— վերջացնում է իր զրույցը ագիտատորը,— մեզ պարտավորեցնում է լարել մեր ուժերը Հայրենիքին է՛լ ավելի շատ և բարձրորակ պղինձ տալու համար։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԽՈՍՔԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՄԱՍԻՆ

Ա. Տոլմաչով

*Պատահում է, որ երկու միանման գրագետ ագիտատորներ զրույց են անցկացնում միևնույն թեմայով։ Բայց մեկին լսում են հետաքրքրությամբ, իսկ մյուսին՝ սպասում, թե երբ պետք է վերջացնի։ Ին՞չու է այդպես լինում։ Հարցը պարզ է. առաջին ագիտատորը կարողացել է զրույցի համար գտնել ցայտուն օրինակներ, շարադրման հետաքրքիր ձև, իսկ երկրորդը՝ չի մտահոգվել ոչ մեկի մասին, ոչ էլ մյուսի։ Ունկնդիրների համար կարևոր է ոչ միայն այն, թե իրենց ինչ է հաղորդում հռետորը, այլև այն, թե նա ինչպես է խոսում։*

*Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները, մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն մեկ անգամ չէ, որ զգուշացրել են, թե պրոպագանդայի և ագիտացիայի բարձր գաղափարական բովանդակությունը պետք է զուգա-*



*կցվի շարադրման ցայտուն, պատկերավոր ձևի հետ։ «Յուրաքանչյուր պրոպագանդիստի ու յուրաքանչյուր ագիտատորի հմտությունը, — ասում էր Վ. Ի. Լենինը, — հենց այն է, որպեսզի լավագույն կերպով ներգործի տվյալ լսարանի վրա, նրա համար հայտնի ճշմարտությունը դարձնելով ըստ հնարավորին ավելի համոզիչ, ըստ հնարավորին ավելի դյուրին յուրացվող, ըստ հնարավորին ավելի ակնբախ ու հաստատ տպավորվող» (Երկեր, հատոր 17, էջ 418)։*

*Ագիտատորի խոսքի կուլտուրան զարգանում է իր լեզվի հարստացման վրա կատարվող ամենօրյա և համառ աշխատանքի պրոցեսում։ Քաղաքական և գեղարվեստական գրականության մշտական և ուշադիր ընթերցումը, որակյալ պրոպագանդիստների դասախոսություններին ու զեկուցումներին մասնակցելը, ռադիոինֆորմացիայի հաղորդավարների ու դերասանների ելույթները ունկնդրելը, վերջապես, բառարանի հետ լրջամիտ աշխատանքը՝ այս բոլորը նպաստում են ագիտատորի լեզվի կուլտուրայի աճմանը։*

*Ամեն մի հասարակական ելույթին ներկայացվող առաջին և գլխավոր պահանջը՝ խոսքի պարզությունն ու մատչելիությունն է։ Հասկանալի կերպով կարելի է խոսել միայն այն*

բանի մասին, ինչը լավ գիտես։ Մտքի պարզությունը ծնում է լեզվի պարզություն։

Իհարկե, առաջիկա զրույցի թեման լավ յուրացնելու և նրա բովանդակությունը ունկընդիրներին հասցնելու համար անհրաժեշտ է դրան նախապատրաստվել։ Ագիտատորի մոտ երբեմն հանգամանքներն այնպես են դասավորվում, որ զրույցն անհրաժեշտ է անցկացնել տառացիորեն մի քանի ժամից հետո։ Այդպիսի դեպքերում նրա համար ավելի դըժվար է, քան, օրինակ, զեկուցողի համար։ Բայց զրույցին պատրաստվելու համար ագիտատորը որքան քիչ ժամանակ ունենա, նա անպայման մեկ-երկու ժամ կգտնի, որպեսզի մտածի, թե ինչպիսի հարցերի վրա պետք է կանգ առնել, կնշի ելույթի համառոտ պլանը։

Նույնիսկ ամենակարճ զրույցի նախապատրաստման ժամանակ գլխավորը՝ ճշգրիտ որոշելն է, թե ինչպիսի մտքեր եք դուք ցանկանում հաղորդել ունկնդիրներին։ Եթե դա արված չէ, եթե ագիտատորը միայն մակերեսային պատկերացում ունի զրույցի առարկայի մասին, ապա զրույցի ժամանակ նա ստիպված կլինի դրա համար հատուցել։

Հարցի էությունը գերազանց իմանալու հետ միասին, խոսքի պարզությունը ձեռք է բերվում հասկանալի բառերի և արտահայտությունների օգտագործումով։



Այն հռետորը, որն ունի հարուստ բառապաշար, երբեք չի չարաշահի օտարերկրյա և այլ և քիչ հասկանալի բառերը։ Ցավոք սրտի, շատ ագիտատորներ այդպիսի բառեր շատ հաճախ են օգտագործում։ «Թերության» փոխարեն ասում են «դեֆեկտ», «պարտականության» փոխարեն՝ «ֆունկցիա», «հայացքների» փոխարեն՝ «կոնցեպցիաներ» և այլն։ (Մենք չենք խոսում, իհարկե, այնպիսի բառերի մասին, որոնք հաստատուն կերպով մտել են մեր խոսակցական լեզվի մեջ և դարձել բոլորին հասկանալի՝ «ռևոլյուցիա», «ինտելիգենցիա», «անկետա» և այլն)։ Ագիտատորի լեզուն փչացնում են նաև կրճատված բառերը, օրինակ, «բանվորական ուժի» փոխարեն ասում են «բանուժ», «մատակարարման բաժինը»՝ «մատբաժին» և այլն։

Հաճախակի ագիտատորի խոսքի մեջ են սողոսկում (երբեմն անկախ նրա կամքից) այսպես կոչված մոլախոտային բառերը, օրինակ, «ուրեմն», «բան», «այսինքն», «այսպես ասած» և այլն։

Տանջանքով ընտրելով բառերը, որոնք անհրաժեշտ են իր մտքերն արտահայտելու համար, ագիտատորը այդ մոլախոտերի օգտագործումով փորձում է լրացնել անհարմար պաուզաները։

Ինչպե՞ս պայքարել մոլախոտային բառերի դեմ։ Այդ բանի համար պետք է, որ կամ ինքը՝ ագիտատորը ուշադիր կերպով հետևի իր խոսքերին, կամ էլ ընկերոջը խնդրի իրեն լսելու։ Պարզելով, թե որ բառերն են փչացնում իր խոսքը, պետք է ջանալ կամքի ուժով, ուժեղ ինքնավերահսկողությամբ այդ բառերը չարտասանել։ Իհարկե, դա հեշտ չէ, բայց ցանկության դեպքում լրիվ հասանելի։ Որոշ ժամանակ անց, անտարակույս, կհաջողվի ազատվել ավելորդ բառեր օգտագործելուց։

Պատահում է, որ ագիտատորի խոսքի մեջ են սողոսկում այլ տեսակի ավելորդ բառեր, որոնք ագիտատորն ինքն է գիտակցաբար օգտագործում, անկեղծորեն կարծելով, թե դրանք հարկավոր են, «արտահայտությունները ամփոփելու», «խոսքը սահուն դարձնելու» համար։ Այդպիսի ավելորդ, երկրորդական բառերի դերում հաճախ հանդես են գալիս ինքնըստինքյան ոչ-վատ «աշխատանք», «գործ», «ամիս» և այլ բառեր։

Հռետորն ասում է. «սոցիալիստական մրցության ծավալման գործում հինգերորդ ցեխը դեռևս ետ է մնում», կամ «քաղաքական ուսուցման կազմակերպման աշխա-



տանքում աչքի ընկավ ընկ. Իվանովի պարտիական խումբը» կամ «մարտ ամսին բրիգադի անդամներից և ոչ մեկը չկատարեց արտադրական նորման»։ Տեքստում առանձնացված այդ բոլոր բառերն էլ ավելորդ են։

Խոսքը բավականաչափ պարզ չի լինի, եթե ագիտատորը բառերը ճիշտ չի արտասանում, նրանց վրա շեշտերը ճիշտ չի դնում։ Մինչդեռ այդպիսի սխալները շատ տարածված են։

Խոսքի մաքրությունը շատ բանով կախված է նախադասությունները ճիշտ կառուցելու՝ հռետորի կարողությունից։ Անփույթ կազմված արտահայտությունները վատ են ընդունվում ունկնդիրների կողմից։ Իսկ որոշ ագիտատորներ էլ երբեմն թույլ են տալիս բառերի սխալ համաձայնություն. շտապելով իրենց միտքն արտահայտել, նրանք «կուլ են տալիս» նախադասությունների վերջավորությունները։

«Այս ամսին մեր ցեխը ասորտիմենտի գծով պլանը չի կատարել, որը երկրորդ եռամսյակում առաջնությունը գործարանում իր ձեռքին էր պահում»։ Եթե ագիտատորը լիներ ուշադիր (կամ նույնիսկ գրագետ), նա, իհարկե, կնկատեր, թե ինչպիսի տգեղ

արտահայտություն է ստացվել իր մոտ։ Բայց չէ՞ որ նա ցանկանում էր բոլորովին այլ բան ասել. «Եթե երկրորդ եռամսյակում մեր ցեխը գործարանի առաջնությունն իր ձեռքին էր պահում, ապա այժմ նա ետ է մնում։ Այս ամսին ցեխը ասորտիմենտի գծով չի կատարել թողարկված արտադրանքի պլանը»։

Խեղաթյուրելով նախադասության մեջ բառերի համաձայնությունը, ագիտատորն իր միտքը դարձրել է խճողված և անհասկանալի։

Մ. Ի. Կալինինը հռետորներին խորհուրդ էր տալիս. «Ուսումնասիրիր քերականությունը, որպեսզի խոսքդ ճիշտ լինի...»։ Չպետք է արհամարհել այդպիսի խորհուրդը։ Քերականությունն իմանալը անհրաժեշտ է, յուրաքանչյուր մարդուն, ով գործ է ունենում հրապարակային ելույթների հետ։

Ինչո՞վ է որոշվում խոսքի կուլտուրան. Առաջին հերթին այն բառապաշարով, որից մարդն օգտվում է։ Աղքատիկ բառապաշարը ծնում է խոսքի շտամպ, չոր, կաղզյոննի ձևակերպումներ։ Իսկ ո՞ւմ հայտնի չէ, թե ինչպիսի ձանձրալի ներգործություն են ունենում լսարանի վրա այդպիսի խոսքերն



ու արտահայտությունները, առանձնապես, երբ նրանք կրկնվում են անվերջ։ Միատեսակ բառերը ձանձրացնում են, ունկնդիրները նրանց այնքան են ընտելանում, որ դադարում են ընկալել նրանց միտքը։ Այդպիսի բառերը, ասես, սահում են մակերեսի վրա, մարդկանց չեն հուզում, ոչ մի զգացմունք չեն շոշափում։

Նույնանման խոսքերից կարելի է հրաժարվել նույնանուն բառերի կիրառման միջոցով, այսինքն՝ այնպիսի բառերի, որոնք մտքով նման են, բայց հնչյունությամբ տարբեր։ Նյունանունները օգնում են խոսքը ավելի հարուստ և բազմատեսակ դարձնելու համար։ Խոսքը հարստացնող միջոցների թվին են պատկանում նաև էպիտետները (ածականները), այսինքն բառերի որոշիչները։ Այն ագիտատորը, որը չունի հարուստ բառապաշար, հաճախակի օգտագործում է միանման, շտամպ դարձած էպիտետներ։ Եթե նրա մոտ «մասնակցություն» է, ապա դա միշտ պետք է լինի «ակտիվ», եթե «աշխատանք» է, ապա պետք է լինի «անձնազոհ», եթե «գիտելիքներ» են, ապա՝ անպայման «խորը»։ Մինչդեռ հյութալի, խելացի ընտրված էպիտետը խոսքը դարձնում է ցայտուն, պատկերավոր։ Այդ նույն

«մասնակցությունն» բառի հետ հաջողությամբ կարելի է օգտագործել այնպիսի էպիտետներ, ինչպես կենդանի, գործունյա, անշահախնդիր, ջերմ։ «Աշխատանք» բառերի հետ՝ համառ, լարված, ստեղծարար։ «Գիտելիքներ» բառի հետ՝ լուրջ, կայուն, խորը, բազմակողմանի, օրիգինալ, հիմնավոր։

Շատ կարևոր է ուշադրություն դարձնել այս կամ այն էպիտետների տեղին օգտագործելու վրա։ Մի քանի ագիտատորներ տարվում են չափազանցված և չարդարացված հիացմունք արտահայտող որոշիչներով։ «Վիթխարի աշխատանք է կատարել բրիգադը, յուրացնելով նոր թեյամանի թրջարկումը»,— ասում էր մի ագիտատոր ինքն էլ չնկատելով, որ հերոսական աշխատանքի երանգը այդ արտահայտությանը տալիս է ծաղրական բնույթ։

Վերջապես, չի կարելի չհիշատակել խոսքի հարստացման ևս երկու միջոցների մասին, որոնցից առավել հաճախակի և հաջողությամբ օգտվում են հռետորները։ Դրանք համեմատություններն ու այլաբանություններն են։

Համեմատությունները դրանք երևույթների կամ առարկաների բաղդատումներն են



միանման հատկանիշների տեսակետից։ Եթե օրինակ, ագիտատորը ցանկանում է ընդգծել մարդու անհողդողդ, ուժեղ և հաստատուն բնավորությունը, նա ասում է. «պողպատի պես ամուր»։

Այլաբանությունները շատ նման են համեմատություններին, բայց այնուամենայնիվ սրանք հատուկ գեղարվեստական ձևեր են։ Այլաբանությունը (նմանությամբ) մի առարկայի հատկությունը փոխադրում է մյուսի վրա։ Եթե նախորդ օրինակում «պողպատի պես»-ի փոխարեն մենք ասենք «պողպատե մարդ», դա էլ հենց կլինի այլաբանություն։

Խոսքը հարստացնում են նաև ժողովրդական ասացվածքները, առակները, հայտնի գրողների «թևավոր խոսքերը»։

Բայց ահա ագիտատորը պատրաստել է ելույթը, կազմել պլանը, բարձրաձայն ասել այն, ինչը նա պետք է ասի։ Կարծես թե, ստացվում է շատ հարթ։ Սակայն, երբ հռետորը գտնվում է լսարանում, ունկնդիրների առջև նրան պարզ է դառնում, որ ելույթ ունենալն այնքան էլ հեշտ բան չէ։ Չէ՞ որ,

մի կողմից պետք է մտքում պահել զրույցի պլանը, հիշել նյութերի շարադրման հետևողականությունը, արտահայտված դրույթների փաստարկման մասին, իսկ մյուս կողմից չի կարելի մոռանալ, որ քո առաջ կենդանի մարդիկ են, որոնք ակտիվորեն լսում են և ըստ այնմ էլ գնահատում քո յուրաքանչյուր վրիպումն ու հաջող միտքը։ Լսարանի տրամադրությունը ուժեղ կերպով ներգործում է ելույթ ունեցողի վրա, և չի կարելի դա հաշվի չառնել։

Ահա թե ինչու կարևոր է, որպեսզի ագիտատորը կարողանա իր ելույթի հենց առաջին իսկ խոսքերից գրավել ունկնդիրների ուշադրությունը, իսկ այնուհետև այն ամրապնդել։

Ճիշտ չէ ենթադրելը, թե սկիզբը և հենց ամբողջ ելույթը պետք է կառուցված լինեն զվարթ պատահարների և անեկդոտային նյութերի վրա։ Ոչ, ամեն մի ելույթի մեջ գլխավորը՝ հիմնական միտքը ունկնդիրների գիտակցությանը հասցնելն է, ստիպելը, որ նրանք մտածեն այդ մտքերի մասին և անեն հարկավոր եզրակացությունները։ Բայց չի կարելի մոռանալ նաև, որ ունկնդիրների ու-



շադրությունը երբեմն պարբերական հանգստի կարիք է զգում։ Տարբեր տեսակի շեղումներն էլ հենց հարկավոր են նրա համար, որպեսզի աշխուժացվի նրանց ուշադրությունը։ Այդպիսի ձևերի թվին է պատկանում, օրինակ, պաուզան։ Եթե կանգ ես առել մի խոսքից առաջ, որն ուզում ես առանձնացնել, ապա խոսելու տեմպի մեջ այդ ոչ մեծ ընդմիջումը ներգրավում է ունկընդիրների ուշադրությունը։

Ձգտելով հասնել շարադրման պարզության և մատչելիության, չպետք է մոռանալ այն լսարանի բնույթի մասին, որի առջև ագիտատորը ելույթ է ունենում։ Յուրաքանչյուրի համար պարզ է, որ խոսքի ազդեցությունն ու մատչելիությունը հարաբերական հասկացողություններ են։ Այն, ինչ հասկանալի է մի լսարանի համար, կարող է անհասկանալի դառնալ մյուսի համար։ Դրա համար էլ անհրաժեշտ է հաշվի առնել ունկընդիրների պատրաստականության մակարդակը։ Վ. Ի. Լենինը գրում էր. «...պետք է սովորել մասսաներին մոտենալ առանձնապես համբերությամբ և զգուշությամբ, որպեսզի հնարավոր լինի հասկանալ այդ մասսայի յուրաքանչյուր խավի,

պրոֆեսիայի և այլ առանձնահատկություն-ները, հոգեբանության յուրահատուկ գծերը» (Երկեր, հատոր 31, էջ 226)։

Միաժամանակ Լենինը նախազգուշացնում էր էժանագին հասարակայնման, ժողովրդի մոտ անհամ խոսելու դեմ։ Այդ հանգամանքը մոռանալը հասցնում է հռետորական տակտի խախտման։ Եթե ագիտատորը սկսում է դիտավորյալ կերպով հասարակացնել իր խոսքը, ինչպես ասում են «ավսվացնել», ապա այդպիսի վարմունքով նա միայն իրենից կվանի ունկնդիրներին։ Ելույթի ժամանակ հռետորի ճիշտ վարմունքը ենթադրում է, որ նա հարգանքով վերաբերվի լսարանին, ի դեմս ունկնդիրների, նա տեսնի իրեն հավասար ընկերների։

Եվ, իհարկե, ոչ մի ագիտատոր չի կարող զրույցի ժամանակ ընկերական մթնոլորտ ստեղծել, եթե զբաղվի խրատներ և ցուցմունքներ տալով։ Զրույցի միջոցին ինչքան քիչ լինեն այնպիսի խոսքերը, ինչպես «պետք է», «պարտավոր են», «հարկավոր է» և այլ արտահայտությունները, այնքան մեծ հաջողության կհասնի ագիտատորը։ Կասկածից վեր է նաև այն, որ մարդիկ չեն հարգի ագիտատորներին, եթե նկատեն, որ



նա իրավացի չէ, խուսափում է սուր հարցերը լուսաբանելուց։

Կենդանի խոսքը անմիտ է, առանց ժեստերի։ Այն հռետորը, որը տարված է իր պատմածով, իր ամբողջ տեսքով, դեմքի միմիկայով, ժեստիկուլյացիայով, մարմնի շարժումներով, դրսևորում է այն, ինչ նա ուզում է արտահայտել։ Ճշտ արտահայտիչ ժեստը երբեմն ավելին է ասում, քան տասնյակ բացատրական խոսքերը։ Ամեն ինչում, իհարկե, պետք է լինի չափի զգացում։ Ձեռքերի միատեսակ, անմիտ թափահարումը, խոսքի տակտի մեջ անվերջ դոփելը, սեղանին թխկացնելը միայն ջղայնացնում են ունկնդիրներին։

Լավ է, երբ ագիտատորը խելացիորեն է տիրապետում իր ձայնին։ Անփորձ ագիտատորը երբեմն խոսել սկսում է ամենաբարձր նոտաներով, չենթադրելով, որ ամբողջ զրույցի ժամանակ դրանք պահպանելը անհնարին է, առանց ձայնի խզման ռիսկի։ Չափից դուրս բարձր խոսելը տհաճ է անդրադառնում ունկնդիրների վրա։ Փորձառու ագիտատորը զրույցը սկսում է հավասար իր սովորական ձայնով։

Բայց ահա զրույցն իր ավարտին է մոտե-

*նում։ Ի՞նչպես այն վերջացնել։ Ստանդարտ դեղատոմս այստեղ տալ չի կարելի։ Ամեն ինչ կախված է այն հանգամանքներից, որոնց առկայության պայմաններում ստիպված է ելույթ ունենալ ագիտատորը, զրույցի թեմայից։ Կարևոր է գտնել այնպիսի վերջ, որը ամփոփի ամբողջ ասածը, ունկնդիրներին հասկանալ տա, որ ելույթը վերջացել է, ագիտատորն ամեն ինչ ասել։*

*Այսպիսին են խոսքի կուլտուրայի մի քանի հարցերը։ Ասածին պետք է ավելացնել նաև, որ այն ագիտատորը, որը կատարելագործում է իր լեզուն, չպետք է սահմանափակվի գեղարվեստական և քաղաքական գրականության ընթերցանությամբ։ Կարևոր է ուսումնասիրել նաև ժողովրդի կենդանի խոսքը, այն լավագույնը, որը ստեղծել է ժողովուրդը։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐ ՀԱՍՏԱՏՎԵԼՈՒ 37-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչ է Սովետական իշխանությունը: *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին: *Երկեր, հատոր 32, էջ 402—445; Հայպետհրատ, 1952։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կեցցե՛ Սովետական Հայաստանը: *Երկեր, հատոր 4, էջ 458—459, Հայպետհրատ, 1948։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Վերածնված ժողովուրդը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 19-ին համարում։*

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և հայ ժողովրդի վերածնունդը, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի № 20-ում և «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 16-ի համարում։*

## 2. ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Թեզիսներ և զեկուցում բուրժուական դեմոկրատիայի և պրոլետարիատի դիկտատուրայի մասին: *Երկեր, հատոր 28, էջ 594—617, Հայպետհրատ, 1956։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան *(Հիմնական Օրենք)։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Սովետական հասարակական և պետական կարգի հետագա ամրապնդումն ու զարգացումը: *ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956, էջ 131—138։*

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակի առթիվ (1917—1957), *ՍՄԿՊ Կենտկոմի պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնի և ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսները, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 17-ի համարում։*

## 3. ՍՈՎԵՏԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՆՎԱՃՈՒՄԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՏԱՍՍ-ի հաղորդագրությունը Սովետական Միությունում Երկրի արհեստական արբանյակ արձակելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հոկտեմբերի 6-ի համարում։*



Սովետական գիտության և տեխնիկայի նոր, փայլուն հաղթանակը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հոկտեմբերի 8-ի համարում։*

Երկրի սովետական արհեստական արբանյակը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հոկտեմբերի 13-ի համարում։*

## 4. ԱՄԵՆ ԿԵՐՊ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ, ԲԱՐԵԼԱՎԵԼ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Աշխատանքի արտադրողականության բարձրացումը: *Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

Արտադրության ռացիոնալիզատորների, գյուտարարների և նորարարների համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումը Սովետական Միության բոլոր բանվորներին և բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին, գիտության և տեխնիկայի գործիչներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 26-ի համարում։*

Հայկական ՍՍՌ-ում բնակարանային շինարարությունը զարգացնելու մասին, *Հայաստանի ԿՊ Կենտրոնական Կոմիտեի և Հայկական ՍՍՌ Մինիստրների*

*Սովետի 1957 թվականի հոկտեմբերի 17-ի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հոկտեմբերի 27-ի համարում։*

## 5. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԱՆԴՈՒԼ ԿԵՐՊՈՎ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԿԱՅՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՄԱՆ ՀԱՄԱՐ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ պատասխանները ամերիկյան «Նյու-Յորք թայմս» թերթի գլխավոր դիվանագիտական թղթակից Ջ. Ռեստոնի հարցերին, *տպագրված «Պրավդա»-յի 1957 թվականի հոկտեմբերի 11-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի ուղերձը Թուրքիայի պրեմիեր-մինիստր Ա. Մենդերեսին, *տպագրված «Ս. Հ»-ի 1957 թվականի հոկտեմբերի 14-ի համարում։*

Սովետական պատվիրակության ղեկավար Ա. Ա. Գրոմիկոյի ելույթը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայում, *1957 թվականի սեպտեմբերի 20-ին, տպագրված «Ս. Հ»-ի 1957 թվականի սեպտեմբերի 22-ի համարում։*

Մեծ Բրիտանիայի լեյբորիստական պարտիայի գործադիր կոմիտեին, *տպագրված «Ս. Հ»-ի 1957 թվականի հոկտեմբերի 17-ի համարում։*

---



## «ՍՈՎԵՏՍԿԻ ՍՈՅՈՒԶ» ԱՊՐԱՆՔԱ-ՄԱՐԴԱՏԱՐ ՏՈՒՐԲԱԳՆԱՑԸ

*Մեր ապրանքա-մարդատար նավատորմի հեռավորարևելյան նավագնացության կազմի մեջ մտավ մի նոր նավ՝ «Սովետսկի Սոյուզ» տուրբագնացը, որը ամենամեծն է Սովետական Միության մեջ։ Նավը նախատեսված է Վլադիվոստոկ — Պետրոպավլովսկ (Կամչատկայի վրա) և Վլադիվոստոկ—Նագաևո ծովային ուղիներով բեռների և ուղևորների փոխադրման համար։ Նավը հարմարեցված է նաև սառույցների մեջ լողալու համար։*

*Տուրբագնացը ունի հետևյալ տվյալները. երկարությունը հավասար է 205,2 մետրի, լայնությունը՝ 24 մետրի, նավեզրի բարձրությունը՝ 19,37 մետրի, ջրում բեռան նստվածքը՝ 8,62 մետրի։ Բեռնատարողությունը կազմում է 2280 տոննա, առանց բեռան նավի քաշը հավասար է 18.781 տոննայի։*

Բեռները տեղավորելու համար կա չորս նավամբար։ Նավում կահավորված է 1699 պառկելու տեղ՝ ուղևորների և 443 տեղ՝ անձնակազմի համար։ Այստեղ ստեղծված է հոսպիտալ, որն ապահովված է ժամանակակից բժշկական սարքավորումով։ Լողալու համար կա փակ ջրավազան։ Կան նաև մանկական սենյակներ, երեխաների սահելու համար բլրակներ, ինչպես նաև փոքրիկ կարուսել։ Տախտակամածի վրա գտնվող ապակեպատ և տաքացվող պատշգամբները և հրապարակներն օգտագործվում են ոչ միայն զբոսանքների, այլև զանազան խաղերի, պարերի և սպորտ պարապմունքների համար։

«Սովետսկի Սոյուզ» տուրբագնացի վրա կան 26 փրկարար նավակ և 2 մոտոռային բոտ՝ 1950 մարդու համար։ Նավի 4 հզոր շարժիչ ագրեգատները բոլորը միասին ունեն 21.300 ձիու ուժի կարողություն, որոնք մի ժամում զարգացնում են 19 մղոն արագություն։ Նավը լրիվ էլեկտրիֆիկացված է, էլեկտրաէներգիան ստացվում է նրա վրա տեղադրված 7 էլեկտրական գեներատորների միջոցով, որոնցից յուրաքանչյուրն ունի 400 ձիու ուժի կարողություն։



## ԲՈՒՐԳԵՐԻ ԵՐԿՐԻ ԹԵՎԵՐԸ

«Հումխարիա», այսինքն՝ «Ռեսպուբլիկա» —այսպես է կոչվում այն առաջին ինքնաթիռը, որն ամբողջովին կառուցվել է Եգիպտոսում, եգիպտացիների ձեռքով, եգիպտական գործարանում։ Դա 145 ձիու ուժանոց մի փոքրիկ մոնոպլան է, որը կարող է օգտագործվել վարժությունների, փորձերի և կապի նպատակներով։

Եգիպտոս եկած այն եվրոպացիները, որոնք սավառնել են այդ ինքնաթիռով, գովասանքով են խոսել եգիպտական ինքնաթիռաշինության այդ առաջնեկի մասին։

## ՀԱՎԵՐԺԱԿԱՆ ԹՈՒՂԹ

Ֆրանսիական «Լա Նատյուր» ժուռնալը հաղորդում է, որ նեյլոնի թելերից պատրաստած թուղթը անհամեմատ ամուր է սովորական թղթից։ Այդպիսի թղթի շատ բարակ թերթը գրեթե անհնարին է պատռել ձեռքերով։ Նա խոնավություն չի ընդունում, քիմիական շատ նյութեր նրա վրա չեն ներգործում, չի ենթարկվում լույսի վնասակար ազդեցությանը, միկրոօրգանիզմների և սովորական թղթի այլ վնասատուների գործունեությանը։

*Այդպիսի թղթի վրա կարելի է գրել և մատիտով և զանազան գույների թանաքներով, նա պիտանի է նաև տարբեր տեսակի տպագրությունների համար։*

*Նեյլոնի թուղթը գործածում են կարևոր նշանակություն ունեցող փաստաթղթեր պատրաստելու, որոնք ենթակա են մշտական պահպանման, ինչպես նաև ռազմական և ծովային քարտեզներ պատրաստելու համար։*

*Այժմ քննարկվում է նրանից թղթե դրամներ կտրելու և անձնական կարևոր փաստաթղթեր պատրաստելու հարցը։*

## ԾՈՎԱՅԻՆ ՄՈՏՈՑԻԿԼԵՏ

*Գերմանիայում բաց է թողնված «Լեպել» սիստեմի մոտորային ակվապլան։ Նրա արագությունը մի ժամում կազմում է 20 կիլոմետր, իսկ բենզինի պաշարը կարող է բավականացնել 6 ժամվա աշխատանքի համար։ Ակվապլանի կորպուսը պատրաստված է ալյումինից և պլաստմասսայից։ Լողորդը կարող է նստել մեքենայի մեջ, կամ կանգնել նրա վրա և ղեկավարել այն յուրահատուկ «սանձերի» միջոցով։ Եթե պատահի, որ վարորդը ընկնի ջրի մեջ, այդ*



*դեպքում ակվապլանը մնալով առանց ղեկավարման, տիրոջից չի հեռանում։ Նա ավտոմատիկ կերպով դանդաղեցնում է իր ընթացքը և սկսում է ոչ մեծ պտույտներ գործել, մինչև որ լողորդը նորից սկսի ղեկը վերցնել իր ձեռքը։*

*Մոտորային ակվապլանը կարող է բուքսիրի վերցնել հասարակ ակվապլաններ, նավակներ և լողացող մարդկանց։ Այդ ակվապլանը կարելի է օգտագործել ոչ միայն ծովի հանդիսա ժամանակ, այլև ալեկոծության։*

*«Ջրային մոտոցիկլետը» քաշում է մոտ 20 կիլոգրամ և ազատ կերպով կարող է տեղավորվել մարդատար մեքենայի բագաժանոցում։*

## ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ՔԻՄԻԿՈՍՆԵՐԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

*Դարենային և տեխնիկական կուլտուրաների ֆոսֆատային պարարտացումը ամենակարևոր միջոցառումներից մեկն է։ Պարարտացման այդ ձևերից մեկը՝ սուպերֆոսֆատն է։ Սակայն սուպերֆոսֆատի արտադրությունը պահանջում է մեծ քանակությամբ ծծմբաթթու, որի ներմուծումը տա-*



ջացնում է մի այլ կողմնակի երևույթ՝ հողի մեջ թթվության քանակի ավելացում:

Ռումինական քիմիայի գիտահետազոտական ինստիտուտը մշակել է մի շարք նոր ֆոսֆատային պարարտանյութեր: Դրանք ավելի ուժեղ են ներգործում, քան սուպերֆոսֆատը, հողի մեջ չի բարձրացնում թթվության քանակը, իսկ արտադրության համար չի պահանջում դեֆիցիտային ծծմբաթթու: Կարևոր է նշել, որ այդ նյութերի արդյունաբերական արտադրության համար չի պահանջվում նոր գործարաններ կառուցել, այլ դրանք կարելի է արտադրել սովորական ցեմենտի գործարաններում:

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД

А. Давтян—Успешно готовиться к зимовке скота . . . . . 1

### ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ

В. Хачатрян—Наглядная агитация на фабрике . . . . . . . 8

В. Бабаян—Что дала Октябрьская революция шахтерам Зангезура . 16

### МЕТОДИЧЕСКАЯ ПОМОЩЬ АГИТАТОРАМ

А. Толмачев—О культуре речи агитатора . . . . . 24

### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ

Темы и литература для бесед агитаторов . . . . . . 39

Справочный отдел . . . . . 43

---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

**ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է**
**„ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի**
**1958 ԹՎԱԿԱՆԻ**
**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ։**

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

| | | |
|---|---|---|
| 1— ամիսը | — | 1 ռ. |
| 6— ամիսը | — | 6 ռ. |
| 12— ամիսը | — | 12 ռ. |
| Մեկ համարը | — — | 50 կոպ. |

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 21 1957 г.**

ՎՖ 10 386 Պատվեր 772 Տիրաժ 8510

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 50 կոպ.։